# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՍՐԲՈՅՆ ՆԵՐՍԻՍԻ

# ՊԱՐԹԵՒԻ

# ՀԱՅՈՑ ՀԱՅՐԱՊԵՏԻ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի Տպարանի Մխիթարեանց

1853

# ՑԱՂԱԳՍ
# ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ
# ՍՐԲՈՅՆ ՆԵՐՍԻՍԻ
## ԵՒ
# ՀԱՍՏԱՏԵԼՈՅ
## ՋԱԹՈՒ ՊԱՏՐԻԱՐԳՈՒԹԵԱՆ
### ՈՐՊԷՍ ԱՅԼՈՑ ՊԱՏՐԻԱՐԳԱՑ



ԱՐՇԱԿ *արքայ Հայոց որդի Տիրանայ կուրացելոյ ըստ արժանին 'ի Պարսից արքայէ, առաքէ մեծապատուով զՆերսէս որդի Աթանագինեի որդւոյ Յուսկան որդւոյ Վրթանիսի որդւոյ սրբոյն Գրիգորի ըստ առաջնոյ կարգին 'ի Կեսարիա ձեռնադրել 'ի հայրապետութիւն Հայոց մեծաց: Զի անդ առնուին զձեռնադրութիւն վասն առաքե-*

լական շնորհքին. զի սուրբ առա-
քելոյն Թադէոս 'ի գալն իւրում
'ի Հայս, զմի յաշակերտաց իւրոց
կացոյց անդ եպիսկոպոս, և այսր
աղագաւ անդ աւանդէին ձեռնադրու-
թիւն որպէս առաջացաւ:

Եւ զի յետ նահատակութեան սըր-
բոյ Յուսկանն՝ բազում ժամանակս
անտէրունչ շրջէին ազգս Հայոց
տատանեալ 'ի զանազան վշտաց,
վասն որոյ ասացեալ լինէր 'ի սըր-
բոց ումանց, եթէ ոչ նստցի յաթոռ
հայրապետութեանն այր յազգէ
սրբոյն Գրիգորի, ոչ լինի անդոր-
րութիւն ազգիս Հայոց: Եւ խնդիր
արարեալ գտանէին զմանուկն Ներ-
սէս գեղեցիկ տեսլեամբ և վայե-
լուչ հասակաւ յարքունիս Թագա-
ւորին Արշակայ, քեռորդի գոլով
նորա. զոր հրամայէր Թագաւորն
կացուցանել յաթոռ հայրապե-
տութեան սրբոյն Գրիգորի: Եւ
սուրբն Ներսէս ոչ առնոյր յանձն.
այլ բազում յանդիմանութեամբ
եպերէր զանմտութիւն նոցա, յուշ
առնելով զչարիսն ամենայն զոր ա-

բարեալ էր յառաջագոյն. և բազում բանագնացութեամբ և սատիւ թագաւորին յակամայ կամս հարկէին զնա, առաքելով որպէս սատացաւ 'ի Կեսարիա Կապադովկացւոց մեծաւ ճոխութեամբ, զի ընկալցի զպատիւ եպիսկոպոսութեան: Որ և սքանչելի իմն նշանք պատմի լեալ 1. զի մինչդեռ կայր ընդ բեմականաւն, 'ի ձեռնադրութեան անդ, շնորհք Հոգւոյն սրբոյ աղաւնակերպ 'ի վերայ գլխոյ նորա հանգուցեալ, 'ի զարմացումն զբոլոր կղերիկոսս եկեղեցւոյն ածեալ լինէր:

Եւ այսպէս ապա լուսազարդեալ նորա, գայ հաստատէ գեղեցկագիր յարմարութեամբ զբոլոր կարգս ուղղութեան, բարենախանձ լինելով 'ի նախանձն հոգեւոր: Եւ նախ ապա զամենայն անդթութեան արմատ խլեալ՝ փոխանակ 'ի ներքս ածէ զողորմածութիւն. շինէ և աղքատանոցս առ 'ի մխիթարութիւն վշտացեալ մարմնոց մարդկան. ուրկաց և բորոտաց, և հաշմից,

և բոլոր վտանգելոց, առձիկս նո-
ցա կարգեալ 'ի գիւղից և 'ի գեր-
դաստանաց. զի ոչ լիցի նոցա տր-
տաքս ըստ բնակութեան իւրեանց
ելանել: Կարգէ և վանորայս, առա-
քանոցս և հիւրանոցս և անանկա-
նոցս 'ի քաղաքագեւղս և յաւանս.
այլ և 'ի յանապատս մենաստանս,
և խորձիթս կուսակրօնից և միան-
ձանց յարդարէր: Բազմայր և ըզ-
մերձաւոր խնամութիւնս, և զկո-
ծագիր ոճիրս 'ի վերայ մեռելոց.
և այնուհետև ապա ոչ իշխէր ըզ-
բարբարոս այլանդակս, այլ իշխէր
զհամեստագոյն քաղաքացիս լինէր
տեսանել զաշխարհս մեր:

Զայսպիսի բարեկարգութեան
ձեւ և շուք տեսեալ ապա Թագա-
ւորն և նախարարք Հայոց, այլ և
զխստամբեր վարս նորա Ճգնողա-
կանս, 'ի մէջ եգին ընդ այլոց եւս
ոմանց և զնա եւս նախակարգել
'ի պատիւ պատրիարգութեան:
Քանզի փոքր ինչ յառաջ քան
զայս Կոստանդինոս որդի Մեծին
Կոստանդիանոսի. յեփեսոսէ 'ի

Կոստանդնուպոլիս զաթոռ պա-
տրիարգութեանն փոխեր վասն
Յովհաննու աւետարանչին · զի
զնշխարսն յԵփեսոսէ անդ տա-
րեալ. ապա ըստ սմին այսմ պա-
տճառի համարձակութիւն և Երու-
սաղեմացւոց առեալ՝ զիւրեանցն
եւս աթոռ հաստատէին 'ի պա-
տիւ պատրիարգութեան, իրաւունս
համարեալ ըստ որում և 'ի նմա
գոլ տեսեալ եղեւ Բանին Հօր
ծնունդ և ընդ մարդկան շրջիլ և
'ի Յովհաննէ մկրտիլն և խաչիլն և
թաղիլն և յերրորդ աւուր յառ-
նելն · և վասն զի ցայն վայր չորք
միայն էին ընդ երկրաւ պատրիարգք
ըստ չորից աւետարանչացն, Մատ-
թէոսին յԱնտիոք, Մարկոսին յԱ-
ղեքսանդրիա, Ղուկայն 'ի Հռոմ,
Յովհաննու յԵփեսոս · ապա յայս-
մանէ իրակերտութեանց վեց բո-
վանդակեալ կացին ։ Ըստ սմին սա-
կի ապա և մերն Թագաւոր Արշակ
և Նախարարութիւնք Հայոց հա-
մարձակութիւն առեալ, կացուցին
'ի պատրիարգութիւն տանս Թոր-

գոմայ զմեծն Ներսէս . փութայր ի-րաւախոհս ըստ արժանին 'ի մեջ առեալ զսուրբ առաքեալսն մեր զԲարթողոմէոս և զԹադէոս, որք աղքանաղեանս ազգին միծակեցան 'ի տեառնէ, քարոզք և աւետարանիչք, և նշխարեալ ոսկերք նոցա կայ 'ի միջի մերում . զորոց և զաԹոռն իսկ ընկալաւ կենդանի մարտիւրոսն Գրիգորիոս : Եւ ապա խորհուրդն զգործն կատարեալ, եւթն միանգամայն բովանդակեալ գանէր Թիւ պատրիարգուԹեանն որ կայ մեզ պահեալ մինչեւ ցյաւիտեանս ժամանակաց : Նաեւ վերջէ վասն այսորիկ և մեծն Սոկրատա պատմագիրն . և Թէ սուրբ ժողովն որ եղեւ 'ի Կոստանդնուպոլիս՝ առհամանեցին զի Երուսաղէմ, Կիպրոս և Հայք ինքնագլուխ ունիցին զպատիւ պատրիարգուԹեան 2 : Եւ այսպէս ապա նահապետուԹեան խորհրդոց եկեղեցւոյ և 'ի մերում աշխարհի լցաւ բովանդակապար ինն միանգամայն գատակարգուԹեամբ պատուեալ . վասն որոյ

ոչ կարացին Յոյնք մտանել 'ի վերայ մեր վասն անթոռակալութեան : Զգլխաւորս եպիսկոպոսացն Վրաց և Աղուանից որք եպիսկոպոսս ընդ ձեռամբ Հայոց պատրիարգին կարգեալ · իսկ 'ի Սեբաստիա , և 'ի Մելիտինէ , և 'ի Մարտիւրոսաց քաղաքի և Ծոփաց աշխարհին և Մուսլ քաղաքին՝ մետրապօլիտս կացուցանէին : Իսկ եպիսկոպոսունս այլս ըստ որոշեալ վիճակացն իւրաքանչիւրոց հաստատէին . և քահանայս և սարկաւագունս և կէս սարկաւագաց և վերծանողս և սաղմոսերգուս , այսոքիկ ցանկեցին ընդ բոլոր եկեղեցիս Հայաստանեայցս վայելչապէս յարդարեալ լինէին 'ի փառս Աստուծոյ :

Իսկ 'ի նշկահելն Արշակայ զՎաղենտիանոս կայսր , մեծաւ ցասմամբ ապա լցեալ Վաղենտիանէ , սպանանէ զեղբայրն Արշակայ զՏրդատ որ 'ի պատանդի առ նմա էր : Զոր ապա զգացեալ մեծին Ներսիսի՝ փութացեալ և առ կայսր հասեալ , և 'ի

ռաւոր զնա հրամայեաց արտաքսահմանել խուրջն հանդերձ կղերիկոսիւք. յորում ոչ ինչ ամենեւին գտանէր ոգէպահ պարենի աւուր միում. այլ 'ի հրամանէ Աստուծոյ ցնդմամբ ալեաց ծովն զձուկնն արտաքս ընկենլով 'ի կերակուր նոցա մատակարարէր զամիսս ինն ։ Եւ յայլոց պատմագրաց առի և այս ինչ, թէ անօրինին Վաղեսի որդի մի էր անդրանիկ մերձ 'ի վախճանել, վասն որոյ խնդրեալ 'ի սրբոյն Ներսիսէ զի բժշկեսցէ զնա. և սուրբ հայրապետն պատասխանի արարեալ, եթէ հաւատասցէ թագաւորն 'ի սուրբ Երրորդութիւնն ըստ Նիկիական կանոնադրութեան սուրբ հարցն երեքարիւր տասնեւութիցն, ես բժշկեցից զորդի նորա. ապա թէ ոչ՝ աղաչեցից զԱստուած զի արագ մեռցի ։ Եւ ոչ առ յանձն թագաւորն, և մեռաւ պատանին. և աղաչէր թագաւորն ոչ աղերսիւ՝ այլ իբրեւ սպառնալեօք, զի յարուսցէ զորդի նորա. իսկ սուրբն Ներսէս ասացեալ, եթէ խոստովա-

Նեւացի զՈրդի՝ Հօր հաւասար ըստ Նիկիական սուրբ հարցն քարոզութեան՝ եւ յարուցից զորդին նորա 'ի մեռելոց։ Իսկ խոնարհեալն 'ի չարիս Վաղէս և ոչ վասն սիրելի որդւոյն կենդանութեան ամենայն յանձն որոշիլ յաղանդոյն իւրմէ. զի ոչ թողոյր զարիոսութիւնն, այլ կայր միայր 'ի նոյն խաւարի անաստուածութեանն։ Իւ զսուրբն Ներսէս, որպէս ասացաւ, առաքեալ 'ի կղզին ժամանդաւորօքն ամենայն, և զիշխանսն որ եկեալ էին ընդ սրբոյ Հայրապետին առաքէ բաղում ընծայիւք առ Թագաւորն Արշակ, գրելով առ նա գիր ըստ այսմ օրինակի, եթէ Մի սրտմտեսցի եղբայրութիւնդ քո վասն պատրիարգին ձերոյ, զի զաթոռակից որդին իմ եսպան նա, որով արժանի էր այնմիկ։

Ընդ որ սաստիկ ցասուցեալ Թագաւորն Արշակ և զգանձն ցրուեալ. և հրամայէր զօրաժողով լինել գնալ 'ի վրէժխնդրութիւն սրբոյ հայրապետին. զի թէպէտ և

ծանուցին իշխանքն Վաղեսի վասն սրբոյն Ներսեսի եթէ ազգական է թագաւորին, և թէ մեծ թշնամութիւն լինի 'ի միջի մերում, ոչ առյանձն ունկնդիր լինել: Իսկ զայնքան աւուրս զորս կացին 'ի կղզւոջն յայնմիկ, յորում աւազ միայն էր, որ ոչ բոյս և ոչ փայտ ամենևին գտանէր, և աղօթիւք սըրբոյն ընդ ձկանն և փայտ 'ի ծովէն արտաքս անկանէր և ինքնին լուցեալ լինէր. և կերակրէին 'ի ձկանէն յայնմանէ ժառանգաւորքն 'ի յութ օրն մի անգամ. իսկ սուրբ հայրապետն 'ի հնգետասան օրն ապա ճաշակէր:

Բայց յաղագս անօրէնն Վաղեսի ասի բան, թէ ըստ հրամանի հզօր ձեռինն Աստուծոյ՝ սուրբ վկայն Գէորգէոս անըմբռնելի ձեռամբ զնա սատակէր, ըստ արժանի չար խորհրդոցն նմա հատուցեալ: Եւ զկնի նորա առնու զթագաւորութիւնն Թէոդոս մեծն և բարեպաշտն և աստուածասէրն. որ զամենայն նիւթս խաւարին խորհրդոց

փարատեալ 'ի բաց , և զանբիծ հա-ւատս հաստատեալ հիմանցոյց . և այլս որք 'ի Մեսոպա 'ի Վաղիսէ ար-տասահմանեալք էին՝ դարձոյց յիւ-րաքանչիւր տեղիս ։ Ընդ. որս և զՄեծն Ներսէս ածեալ առ ինք պա-հէր , մինչեւ 'ի ձեռն նորա զամբա-րիշտ հայհոյութիւնն Մակեդոնի 'ի ստուգութիւն հաւատոց Ճշմարտու-թեանն դարձուցէ . և այլս ժո-ղով եպիսկոպոսաց միաբանական հարիւր և յիսնից 'ի Բիւզանդիոն արարեալ , Նզովեալ մերժեցին 'ի բաց զՄակեդոնն և զամենայն հոգե-մարտս ։ Եւ վասն այսորիկ յառա-ջագոյն մարգարէացեալ սուրբն Ներսէս ասելով առ Վաղէս , թէ Երագ բարձցէ Աստուած զամբա-րիշտ թագաւորութիւնդ և յա-րուսցէ թագաւոր բարի , որ փա-ռաւորեսցէ զԱստուածն իմ ։ Որ և աստ 'ի մեծն Թէոդոս կատարեցաւ ըստ բանի սրբոյ հայրապետին , որ-պէս ասացին Ճշմարտապէս . զի ե-բարձ Աստուած զամպրոպ խռովու-թեանն և զխաւար մթութեանն յե-

կեղեցւոյ իւրում սրբոյ. և ծագեաց զլոյս աստուածգիտութեան և զսիրոյ և զխաղաղութեան 'ի հաւատացելս անուան իւրոյ սրբոյ. որով փառաւորի միշտ ամենասուրբ Երրորդութիւնն յաւիտեան։

Բայց Շապհոյ Պարսից արքայի կալեալ կապեալ զԱրշակ արքայ Հայոց դնէ յԱնուշն կոչեցեալ բերդի. իսկ Արշակայ յայնմ բերդի սրրով 'ի սիրտ խոցեալ իւրովի զինքն զրաւէ 'ի կենացս։ Եւ կատարեցաւ յայսմ վայրի հրաման մեծին Ներսիսի առ Արշակ. զի յորժամ ըսպան զԳնէլ նենգութեամբ, որպէս ասի 'ի կատարեալ պատմութեանն, անէծ զնա սուրբն Ներսէս ասելով. եթէ Մահ քո 'ի ձեռաց քոց լիցի որպէս Սաւուղին և Հերովդէին. որպէս և եղեւ իսկ։ Նա և յորժամ զԱրշակաւանն շինեաց և հրամայեր սուրբ հայրապետն քակել, և ոչ առյանձն Թագաւորն, և աղօթիւք սրբոյն կործանեցաւ քաղաքն, և բազում եւս այլ Թշնամութիւն եղեւ 'ի մէջ Թագաւորին և հայրա-

պետոյն, որպէս ասէ պատմութիւնն, վասն անլուր լինելոյ հրամանի նորա. վասն որոյ ցասուցեալ սուրբ հայրապետն ասէ. Բարձցէ Աստուած զԹագաւորութիւնն յազգէդ Արշակունեաց և զքահանայութիւն յազգէ սրբոյն Գրիգորի. և ինքն 'ի բաց հրաժարեալ գնայր կայր լռելեայն, սուգ առեալ 'ի վերայ անուղղայ վարուց նոցա, որպէս Սամուէլ 'ի վերայ Սաւուղի: Եւ բազում աղաչանօք դարձուցանէին զնա յաթոռն իւր, խոստանալով գնալ ըստ կամաց նորա:

Եւ յետ այսր ամենայնի յորժամ կատարեցան ասացեալքն 'ի սրբոյ հայրապետէն 'ի վերայ Թագաւորին Արշակայ, և զայնպիսի չարաղէտս մահու նորա լուեալ մեծին Ներսիսի, ըղձակերտութեամբ իմն հայցէ յինքնակալէն Թէոդոսէ՝ Թագաւորեցուցանել Հայոց զՊապ որդի Արշակայ. զոր և արարեալ իսկ հանդերձ սրբովն Ներսէսիւ վաղվաղակի առաքէ 'ի Հայս: Որք եկեալ գտին զՄերուժանն ու-

ռացող բազում զօրօք միաբե-
ռեալ զՀայս. և ապա խմբէին 'ի
պատերազմ ընդ միմեանս 'ի Ձի-
րաւ. և իբրև յաւէտ իմն պատե-
րազմն սաստկանայր, ելանէ ապա
մեծն Ներսէս 'ի լեառն Նպատ, և
ըստ օրինակին Մովսեսի տարածեալ
զբազուկսն յերկինս՝ աղերսալի պա-
ղատանօք առ 'ի Քրիստոսէ հայցէ
լինել պաշտպան քրիստոսադրոշմ
բանակին. որով և պարտեցան իսկ
յաստուածամարտ մարտուցելքն:
Եւ քաջն Մուշեղ որ և զզէնսն
իւր բերեալ առաջի սրբոյ հայրա-
պետին զի օրհնեսցէ. և զդաստա-
ռակ նորին խնդրեալ կապէր 'ի
նշանակ իւր, պատմէր եթէ 'ի
ծածկել մթութեանն զբանակն ան-
օրինաց, տեսանէր զսուրբ հայ-
րապետն լուսեղէն կերպիւ, զի
գնայր առաջի և ցուցանէր նշանացի
զմի մի 'ի թշնամեացն, որք ընթա-
ցեալ զհետ կոտորէաք յանխնայ:
Եւ այսպէս բանակն Հայոց զօրա-
ցեալ, դիակամբք թշնամեացն լցին
զառաստորեւն ամենայն: Եւ եթէ

նահարհեցուցանէր սուրբ հայրապետն զձեռն իւր յաղօթիցն, թագաւորն Պապ փութացուցանէր ասելով. Ստէպ աղօթեա սուրբ քահանայապետ Աստուծոյ: Զի թէպէտ զօրքն մարանչէին՝ բայց աղօթք սրբոյն էր որ զյաղթութիւնն գործէր 'ի պատերազմին յայնմիկ: Ուր և ձերբակալ իսկ արարեալ. Սմբատայ զպիղծն Մերուժան Արծրունի, և երկաթ բոլորեալ 'ի ձեւ պսակի, և շանթիւք հրոյ շողացուցեալ դնէ 'ի գլուխ նորա, և այնպէս զնա սատակէ:

Բայց Պապ արքայ միշտ հրապոյրս յինքն կրեալ 'ի ճակաճան աղտեղի գործոց, վասն այնորիկ ապա համապազ կշտամբեալ և յանդիմանեալ լինէր 'ի սրբոյն Ներսիսէ: Ընդ որում յաւէտ դժարացեալ Պապայ, և յայտնի ինչ ոչ իշխեցեալ առնել, կոչէ զնա բազում թախանձանօք 'ի ճաշ 'ի գեւղն Խախ յԵկեղեաց գաւառի. և յիւր իսկ թագաւորական գահոյն ստիպէր բազմել նմա. և

սուրբն ոչ առնոյր յանձն . և առաւել եւս բռնադատեալ բազմեցուցանէր , և ինքնին անցեալ մատռուակէր արբուցանելով նմա բաժակ մահու . զոր իբրև առեալ ծանուցեալ սրբոյն ասէ . Ո՛վ անիրաւ թագաւոր , գեղով սպանանելն այնոցիկ է որք յայտնի ոչ լինիցին ձեռնհաս , իսկ ես յամենայն ժամ 'ի ձեռս քոյ էի ։ Եւ ասէ , Թող տէր գոցա 3 ։

Զոր պարտ է ասել առ այնպիսին , եթէ Ո՛վ անմտագոյն դու 'ի թագաւորս , այդ ընդ որո՞ց երախտեաց է զոր հատուցանես սուրբ հովուապետիդ . ընդ որոց զթագաւորութիւնդ քեզ շնորհեաց , թէ վասն զի 'ի ձեռն աստուածահաճոյ աղօթից իւրոց զթշնամիսն 'ի ձէնջ հալածական առնէր . թէ փոխանակ զի զանձն իւր 'ի վերայ ձեր 'ի մահ եդեալ , թէ յաղագս աստուածուսոյց վարդապետութեանն , զոր խրատէր զմի մի իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ , թէ վասն աստուածագութ սիրոյն զոր ունէր առ ձեզ ամենեսեան ։ Աւա՜ղ չար փոխարէնիդ .

զմիդ տեառն հաստատեցանէք դուք ժողովուրդք յիմարք, և ոչ իմաստուն : Այս է աստուածայինն Մովսէսն. Ցանդիմանեա զանմիտն և յաւելցի ասել զքեզ. և թէ Զիրրաս ամբարիշտք անգոսնեն, և թէ Որպէս ջուր 'ի ծակ կարաս դոյլ խրատ անմտի. և Բարերոք է զքար ընդ վայր ընկենուլ քան զբան 'ի յունկն անմտի : Ո՛վ Թշուառականք. մինթէ վրէժխնդիր լինիք արեան նախնոյն ձերոյ Խոսրովու, Թերևս այդ է արիւնախանձ զազանութիւնդ ձեր, և վասն այդորիկ յաճախէք 'ի չարիս ձեր. այլ նոքա ըստ արժանեացն իւրեանց ետուն և տալոց են զպատիժս պատուհասից, դուք զի՞ զրկէք զժողովուրդ տեառն 'ի լուսոյ աստուածայինն ծրագացդ. և ընդէ՞ր կորուսանէք զոգիս ձեր անմտութեամբ. զանէրդ և զվարդապետող այդպիսի մշտայց մնանել, նման չարաբախտին այնմիկ և վատշուէրին, զփոխանակ փրկչին մահու մատնեալ և 'ի մահ դատապարտեալ, և զո՞ր պատասխանա

տուաւթիւն ունիցիք առաջի Աստուծոյ։

Բայց զի ժամանակս ոչ է վարդապետութեան՝ դարձցուք 'ի բանն ուստի ելաք։ Եւ եղեալ վաղվաղակի սուրբ հայրապետն Ներսէս 'ի բազմականացն արքունի՝ գայր 'ի Թիլն աւան. և մտեալ 'ի տաճարն Աստուծոյ, և ողջունեալ զսեղանն սուրբ և զեկեղեցին, և ասացեալ զՈղջոյնսն և զՀրաժարեմն և զայլսն ամենայն, և 'ի կցրդէն հանգըստեան վասն անհեղ դատաստանին 4, և թէ մարտիրոսքն կարմրագոյն պսակաւ պճնին, և կուսանքն սպիտակափայլ զարդարին. և եղեալ արտասուս և բազում ժամս աղօթեալ դէմ արեւելից, և բազում բանս մարգարէականս խօսեցեալ, և վերացուցեալ զպարեգօտն, և իբրեւ զնկանակ մի էր կառուցեալ կապուտակ 'ի վերայ կրծիցն։ Եւ բազումք յիշխանացն որ եկեալ էին ընդ նմա աղաչէին զի առցէ թրակէ և թափեսցէ զդեղն, և ոչ առյանձն, զի մի զրկեսցի 'ի հաղոր-

գութենէն . այլ ասէր , Թոյլ տուք զի վաղ հրաժարեցից 'ի մշտալի կենացս , և 'ի մարդկան չարութենէ : Եւ օրհնեալ զքաջն Մուշեղ Մամիկոնեան և զայլ ազատսն , և զսեպուհսն , և պատուեալ նոցա յանձանս վասն եղանելոյ ազգին Ներսողաց . և վասն ամենայն չարեացն զոր հասուցանեն մարդկան , և վասն շարժելոյն իբրեւ զուղխս հեղեղաց յարուեալց . յորում ժամանակի ասէ մնան մարդիկ առ ոտս լերինն ուր կայցեն սուրբ ոսկեայքն Հռիփսիմեանք Ե , և 'ի կղզիս և 'ի քարանձաւս , և բնակիլ ասէ զօրացն Նետողաց շուրջ զովկիանոսիւ , և առաքեալ ոստիկանս 'ի Թագաւորեալ քաղաքն Կոստանդինուպոլիս , և երթեալ գաւանէ խաչին Քրիստոսի , և եկեալ դարձեալ յայս կոյս սպանանէ զզօրապետն իւր և զաւագեիչն . և զօրք քրիստոնէից միաբանեալ եկեսցեն զկնի , փախուստականս առնելով զնոսա յերկս առաջս , ընդ միջերկրայս և ընդ հարաւակողմ՝ և ընդ հիւսիսի , և

հետամուտ եղեալ հալածեն մինչեւ յարեւելս բնաջինջ առնելով զնոսա : Եւ խաղաղանայ աշխարհս, և միապետի քրիստոնէութիւն . և այնչափ յաճախէ բարօրութիւն, մինչ զի աւաղեն զոչ հասեալն յայնպիսի բարութիւնսն . և լինի այս զամս վաթսուն և չորս : Եւ ապա յայտնի մարդն անօրէնութեան որդին կորստեան Ներոն . և կատարին գրեալքն ամենայն :

Զայս և եւս առաւել քան զայն խօսեցեալ սուրբ հայրապետն Ներսէս, և զգուշացուցեալ զեկեալսն զկնի իւր, զփախուստն յարեւելս առնելով առնել իմաստնոց արանց : Եւ զի ստիպէր զնա ցաւն, հարուստ ժամս աղօթելով ճաշակեալ 'ի մարմնոյ և յարենէ տեառն, և փոխացեալ հանգեաւ 'ի Քրիստոս . կալեալ զաթոռ հայրապետութեանն զամս երեսուն և չորս :

Սա էր 'ի ժողովն Կոստանդնուպոլսի 'ի գումարումն սուրբ հարցն հարիւր և յիսնիցն վասն հոգեմարտին Մակեդոնի : Սա բազում

կարգս ուղղութեան հաստատեաց ե-
կեղեցւոյ և ժողովրդոց յաշխարհիս
Հայոց : Սա վասն առաւել ջահա-
փայլութեանն՝ երկրորդ լուսաւո-
րիչ կոչեցաւ ըստ նմանութեան
նախնոյն իւրոյ սրբոյն Գրիգորի :
Սա յոյժ ահարկու էր ազգաց և ա-
զանց և Թագաւորաց վասն առա-
ւել յանդիմանութեանն և ճշմա-
րիտ քարոզութեանն : Սա եւս բա-
զում բանս խօսեցաւ առ 'ի յօ-
գուտ լսողաց վասն ազգին Նեստո-
րաց , և վասն որդւոյն կորստեան և
վասն միւսանգամ գալստեանն , որ
կայ 'ի կատարեալ պատմութեանն
իւրում : Սա նախանձաւոր հարցն
առաքինութեան և 'ի բազում իրս
առաւելեալ , օրինակ բարեաց ա-
մենեցուն լինելով : Սա մեծագոյն
ջանիւ բառնայր զամուսնութիւն
մերձաւորութեան զոր անխտրաբար
ունելով ազգիս Հայոց . և սորա
հրամանաւ մինչեւ յեօթնեսին ազգ-
սահմանեցաւ ամուսնութիւն :

Եւ արդ եդաւ նշխարք ոսկերաց
սորա 'ի Թիլն աւան յեկեղեցւոջն ,

ըստ օրինի քահանայապետի , և անյայտացաւ գերեզմանն 'ի բազում ամաց անցելոց 'ի վերայ · Թերևս զգուշացեալ 'ի գաւողաց և կացեալ մնացեալ 'ի պահեստի մինչեւ 'ի դէպ ժամանակի յայտնելոյ 'ի հրամանէ Աստուծոյ կարգելոյ 6 ։

Զկնի սորա կացուցանեն յաթոռսորուն զՇահակ՝ 'ի զաւակէ Աղբիանոսի , այր գովելի և լի առաքինութեամբ և բարեկարգութեամբ կրօնից ։ Ոչ ևւս ըստ սովորութեանն առաջնոյ առաքեալ զնա 'ի Կեսարիա , այլ լքեալ 'ի բաց զօրէնն առաջին , ըստ օրինի պատրիարգաց կալեան կարգ , ժողովով եպիսկոպոսաց ձեռնադրել , որպէս Անտիոք և Աղեքսանդրիա և Հռոմ և Եփեսոս և Կոստանդինուպոլիս և Երուսաղէմ , զի մի յայլոց ումանց ընդ ձեռամբ անկցի , որ ինքնակալութեամբն է պատուեալ պատրիարգութիւնն ։

Իսկ զՊապ արքայ Հայոց՝ կայսրն Թէոդոս ըմբռնեալ սպանանէ վասն վրէժխնդրութեան սրբոյն Ներսէ-

որ Ճշմարիտ քահանայապետին Աստուծոյ ։ Եւ զկնի Շահակայ զԶաւէն եղբայր նորուն հաստատեն յաթոռ նորա նախկին առաքինահրաշ վարուք պայծառացեալ ։ Եւ ապա Ասպուրակէս եղբայր նորուն կալաւ զաթոռն 'ի նոցին առաքինութիւնս յառաջադէմ գտեալ ։ Եւ ապա սուրբն Սահակ որդի մեծին Ներսիսի ընկալաւ զաթոռ հայրապետութեանն ։

Բայց Մեսրովբ որ էր 'ի Հացեկաց Տարաւնոյ և աշակերտեալ էր մեծին Ներսիսի, և էր քարտուղար 'ի դրան արքունի, ընկեցեալ 'ի բաց զպատիւ մարդկային, զհետ գնայր երկնաւորին, զմարս միայնակեցութեան ստացեալ, հետեւելով առաքինութեան վարդապետին իւրոյ և Ճշմարիտ քահանայապետին սըրբոյն Ներսիսի [7] ։

Զի մեծն Ներսէս յիւրում ժամանակին սիւն հաստատութեան էր կաթուղիկէ եկեղեցւոյ և պարիսպ ամրութեան հաւատացեալ ժողովրդոց, քաջութեամբն իւրով և Ճըշ-

մարխա առաքինութեանցն : Ներ-
սէս քահանայապետ Աստուծոյ
բարձրելոյ և բաշխիչ մարմնոյ և ա-
րեան տեառն, որք մաքրապէս մեր-
ձենան 'ի փրկութիւն անձանց և 'ի
նորոգութիւն հոգւոց : Ներսէս
քարոզ բանին կենաց և դասակից
առաքելական դասուն բացայայտե-
լով զճշմարտութիւնն, և հրաւիրե-
լով զամենեսեան յորդեգրութիւն
Հօրն երկնաւորի : Ներսէս պսակ
եկեղեցւոյ և յարդարիչ կարգաց
ուղղափառութեան՝ վարժելով ըզ-
մանկունս նորա 'ի գիտութիւն ճըշ-
մարտութեան, և յորդորելով
յերկս առաքինութեան : Ներսէս
բարեխօս աշխարհի և միջնորդ հաշ-
տութեան ընդ Աստուած և ընդ
մարդիկ մեղաքաւիչ պատարագաւն
և բազկատարած աղօթիւք : Ներսէս
զինուոր առաքինի երկնաւոր Թա-
գաւորին Քրիստոսի, մենամար-
տեալ արիաբար ոչ ընդ մարմնոյ և
ընդ արեան, այլ ընդ իշխանու-
թիւնս և ընդ պետութիւնս և ընդ
այսս չարութեն որ են 'ի ներքոյ եր-

կնից և յաղթող լեալ ախոյեանին զօրութեամբ տեառն իւրոյ ։ Ներսէս նահատակ ճշմարտութեան, 'ի վերայ օրինաց և պատուիրանաց որդւոյն Աստուծոյ զբաժակ մահու արբեալ ․ վկայ արիապէս փրկչին մերոյ Յիսուսի, յոր անձկացեալ սիրով ելանել 'ի մարմնոյս, և մտանել առ Աստուած ։ Ներսէս դասակից սերովբէից, և կաճառակից քերովբէից, և փառաբանիչ փառաց ամենասուրբ Երրորդութեանն, բարեխօսելով միշտ վասն բանաւոր հօտի իւրում, եւս առաւել ամենողացս սիրով զոր յիշատակի իւրոյ ։

Վասն որոյ եկայք և մեք միաբան ժողովեալքս այսօր 'ի յիշատակի տօնախմբութեան մեծապայծառ և փառաւոր հովուապետին մերոյ, զհովիւն քաջ բանաւոր հօտից զտէր մեր Յիսուս Քրիստոս օրհնեսցուք, գովեսցուք, բարեբանեսցուք, բարեհամբաւեսցուք՝ և առաւել փառաւորեսցուք ընդ Հօր և ընդ Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ․ ամէն ։

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ ՆՇԽԱՐԱՑ

## ՍՐԲՈՅՆ ՆԵՐՍԻՍԻ

ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ ՆՇԽԱՐԱՑ
ՍՐԲՈՑՆ ՆԵՐՍԻՍԻ ՀԱՅՈՑ ՊԱՏ-
ՐԻԱՐԳԻ
ԵՒ ԵՐԿՐՈՐԴ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ,

ՈՐ ՕՐ Ա Է ԸՍՏ ՀՌՈՎՄԱՅԵՑՒՈՑ
ԱՄՍՈՅՆ ՓԵՏՐՈՒԱՐԻ,
ԵՒ ՀԱՅՈՑ ԱՄՍՈՅՆ ՈՐ Է ԱՐԱՑ ԻԵ.

ՅՈՐՈՒՄ ՏԱՒՆԵՆ ԵԿԵՂԵՑԻՔ
ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ՄԵԾԱՒ ՀԱՆԴԻՍԻՒ.

ԶՈՐ ԿԱՐԳԵԱԼ ՀԱՍՏԱՏԵԱՑ ԱՐՀԻ-
ԵՊԻՍԿՈՊՈՍՆ ՏԷՐ ՍԱՐԳԻՍ,

ՏԱՒՆԵԼ ՅԱՄԵՆԱՅՆ ԱՄԻ ԶՆՈՑՆ ԱՒՐ
ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ ՆՇԽԱՐԱՑ ՍՐԲՈՑՆ,

ԽՈՐՀՐԴԱԿԱՆ ԵՐԳՈՎՔ ՇԱՐԱԿԱՆԱՑ
ԵՒ ՆԵՐԲՈՂԱԿԱՆ ՃԱՌԻՒ



ՅՈՐԴՈՐԱԿԱՆ ձայնիւ ցնծութեան՝ աւետիս բերկրանաց և բարեաց մատուցանեմք քեզ Հայաստանեայց սուրբ եկեղեցի. զի յետ թանձրամած ամպոյն ծածկութեան քաղցրագոյն ծագեաց քեզ լոյս՝ յանմուտն արեւուն անստուեր լուսոյն, և փարատեաց զախրատեսակ խաւար տրտմութեանն: Վասն որոյ ձայնեմք ձայն ախորժելի. Արի որ ննջեսդ, և կանգնեաց 'ի մեռելոց՝ զի լուսատու եղեւ քեզ Քրիստոս: Բաց զաչս քո և տես զգեղեցկութիւն լուսոյն շուրջանակի զքեւ ծագելոյ. Ժողովեա զմանկունս քո գրկօք մայրենի 'ի գութ հայրական անդրէն դարձելոյ: Զի այս օր երիցս երջանիկ հայրն մեր հոգեւոր, բարեզարդ հարանց նորադափայլ ծաղիկն և որդին լուսոյ

սուրբն Ներսէս , հաշտ ակամբ և կամօք , և զուարթարար դիմօք քեզ երևեցաւ ։

Ուրախական նուագ ներբողեան՝ հոգևոյ քնարիս մասամբք յօրինեալ, նուիրեմք քեզ սուրբ եկեղեցի. զի յետ արտմական քոց տառապանաց՝ ուրախութեան հնչեաց քեզ հրաւէր. ամենակարող բազուկն հզօր ձեռն ետ քեզ և յարոյց , ոչ իջանել յապականութիւն ։ Լուաւ քեզ տէր և ողորմեցաւ. և զգայական սուգն տրտմութեան զոր ունէիր զգեցեալ 'ի լուսաւորիչ հարցն բարեզարդութենէ , դարձոյց վերստին յուրախութիւն . զերծ 'ի քէն զքուրձն նախատանաց և զերկեւղն մահու դառնագոյն մեղացն՝ որ անգիտութեամբ . և զգեցոյց քեզ հանդերձ փառաց և ուրախութեան պատմուճան ։ Զի այսօր եկն առ քեզ հայրն գորովագութ որ ծաղկերանգ պատմուճանաւ զարդարէր զքեզ . որդիական քո կոչմանդ զգօնութեան խրատն . նորազուարճ քո

տնկոց ամրութեան ցանկն . հոգե-
հարուստ քո գանձուց անվանելի
պարիսպն : Սուրբն Ներսէս սահ-
մանադիրն և կարգաւորիչ քո բա-
րեզարդութեանդ՝ ուրախացուցիչ
տեսլեամբ հայեցաւ 'ի քեզ : Հրը-
ճուանք հոգեւոր , և երանաւէտ բա-
րեաց լրութիւն . հայրապետական
պատուեալ աթոռոյդ և աստուա-
ծապարգեւ շնորհիւ աթոռակա-
լիդ , անժամանակին Յիսուսի անրա-
կիզըն քահանայապետութեանն ա-
նուանակրի , տաճարական աշտի-
ճանի փառաց փոխանորդի , ար-
ժանաժառանգ սուրբ լուսաւորչին
Գրիգորի վիճակեալ հօտին տեղա-
պահ : Զի նորաբողբոջ շառաւի-
ղիք ծաղկեալ դալարացաւ գաւա-
զանն գեղեցկութեան՝ հեզ և խո-
նարհ քահանայութիւն սրբոյն Գրի-
գորի , և տուաւ գաւազանն ուղղու-
թեան , քրիստոսանման գթով դի-
տապետութիւն՝ սուրբ հեղինակին .
և ունիս զգաւազանն յուսոյ , որով
յեցեալ մնաս 'ի հաստատութիւն ,
ակն կալեալ քո պայծառ բարձրու-

թեան, և լաւագոյն փրկութեանն. զի այսօր սեփհական խնամածուն և հովուին արթուն 'ի քեզ նայեցաւ, որ հովուէրն զհօտ Քրիստոսի 'ի վայրի գալարուոյ. քաղցրաբոյ վարդապետութեամբ զաւազանին ուղղիչն, ցամաքական ցպով սաստկութեան յանդիմանիչն, գեղեցիկ քահանայութեանն զաւազանաւ տանն տէրունի զարդարիչն:

Սուրբն Ներսէս, սիւնն լուսոյ և խարիսխն անշարժելի հաւատոյ, ամենառատ բարեաց ճոխութիւն, և ամենագիւտ գանձուց փարթամութիւն, շնորհեցաւ այսօր Հայաստանեայց արքայական աթոռոյդ. զի յաջորդակ աջոյն Յիսուսի եղեւ քեզ զօրութիւն, և զօրութեամբ բազկին բարձրելոյ թագաւորական փառաց քոց բարձրութիւն. և 'ի տեառնէ առաւ թագաժառանգ զարմիդ Արծրունեաց յաղթութեն: Ջի թէպէտ գաւառ վերջին ըստ ժամանակի, այլ զօրութեամբ և պատուով առաջին ըստ հաստատութե հաւատոյ, Արշակունեաց թա-

գլին Թագընկալ. և Բագրատունեաց փառացն փոխանորդ, ծնունդ ազնուական տոհմին Արծրունեաց, ամենակալ արքային Յիսուսի անեղական և աննման փառացն պատկեր և կերպարան եղական 8 :

Այսօր ծագեաց նշան անծերանալի պատուոյ և մշտանորոգ ծաղկով պայծառութիւն արքայական վիճակեալ քո գաւազանիդ՝ Թագաւորաց ամենայարգար յօրինուած օրինօք, և հայրն հոգխաղացեաց սուրբն Ներսէս, հեղահայեաց գիմօք հայեցաւ 'ի ժամանակս քոյոյ Թագաւորութեանդ. ոչ յիշել զառաջին անհնազանդութեանն ըղպարտիս, այլ ժամանեաց յօգնութիւն ոկարացելոյ ազգիս շնորհաբաշխ աջովն, պահպանիչ և նուիրական աղօթիւքն՝ բազմադիմի հիւանդութեանցն ապաքինիչ. հլու և հպատակ որդւոցդ՝ օրինապահ, քահանայական հայցմամբն՝ զօրացուցիչ :

Նորոգեցարուք առ իս կղզիք՝ որք 'ի հեթանոսաց եկեղեցիք, բարձ-

րըն Եսայիաս ձեզ աւետարանէ , որք յաղտաղտուկ մեղացն և 'ի ժանգահոտ աղմասեր վարուցն 'ի վեր ամբարձայք ․ և յԱստուած խարըսխեալ ամրացայք յուսով գեղեցիկ աւետարանչացն , որսացեալք ուռկանաւ բանին , մանաւանդ հիւսիսաբնակ ազգ Հայաստանեայց , առաքելանման հօրն մերոյ Գրիգորի լուսաւորչին որոյ բազմալոյս բանին ծնունդք և որդիացեալք ։ Ձեզ այսօր աւետարանէ հրամանքուրն լեզու և սրովբէատես մարգարէն , Նորոգիլ դարձեալ վերստին ․ զի զոր Պաւղոսն տնկեաց , Ապողոս ջուր ետ և Աստուած աճեցոյց , դարձեալ Թառամեցոյց հողմն հիւսիսոյ ։ Տնկեաց ընտրազուարճս զայս դրախտ 'ի կենդանի տնկոց Գրիգորիոս մշակն աշխատասէր ․ Ջուր ետուն յորդաբուխ վտակաւ բանին որդիքն համանման , աճեցոյց անկարօտն կերակրոյ , և կերակրեալն 'ի բարեաց պտղոյ՝ անեղծին բնութեանս ։ Այլ դարձեալ Թառամեցոյց պատուիրանացն ան֊

հնազանդութիւն . քակեցաւ ցանկն ամրութեան , և եղեւ գրախտս այս յապականութիւն . և առ 'ի չգոյէ իշխանութեան ցանկոյն , կթեն զսա անցաւորք Ճանապարհաց , որդիքն Իսմայելի և ծնունդքն Հագարու՝ զմարմնականն պտուղ , և բանսարկուըն զբարեաց մասունս իւրովք իշխանօք : Եհաս ժամանակ գթալոյ և ողորմելոյ տեառն , յառնել յերկայնմտութենէ և յաթոռոյ փառաց իւրոց՝ վայրանկելոցս և գերելոցս 'ի ձեռնտուութիւն , ոչ եօթանասնամեայ ըստ Հրէիցն , այլ զամս ութհարեւր քսան և չորս բառնալոյ թագաւորութեան 'ի տանէն Արշակունեաց 9 , և դադարումն քահանայապետութեանն 'ի զարմից սրբոյն Գրիգորի՝ յորոյ վերայ ողբս առեալ Մովսէսի , « Ողբամ զքեզ Հայաստանեաց աշխարհ , զի բարձաւ թագաւոր և քահանայ , խորհրդական և ուսուցիչ . վրդովեցաւ խաղաղութիւն , արմատացաւ անկարգութիւն : Ողբամ զքեզ Հայաստանեայց սուրբ եկեղեցի , 'ի քա-

Ջրոց զզկեալ հովուէ և հովուակցէ . ոչ եւս տեսանեմ զքո բանաւոր հօտդ 'ի վայրի գալարուոջ և ոչ 'ի փարախս հաւաքեալ զգուշանալով 'ի գայլոց . այլ ցրուեալ անապատացար 'ի գահավիժութեանց . զոր և Դաւիթ ասէ . Քակեցեր զցանկ նորա և կթեն զնա անցաւորք ճանապարհաց :

Ցայտնապէս զանանութեան աղէտս նայեցեալ ամենագութն և դարձաւ 'ի բարկութենէ սրտմտութեան իւրոյ . հայեցեալ յերկնից եւտես և այց արար այգւոյս այսմիկ . զոր տնկեալ Աստուած Հայր աջովն իւրով Յիսուսիւ . 'ի ձեռն ծրաջան մշակին և գործասէր վաստակաւորին բազմաչարչար նահատակին իւրոյ Գրիգորի մերոյ Լուսաւորչին . և զոր 'ի բարկութեան ժամուն և յանպտղաբերութեան պատուէր ետ ամպոց իւրոց զի մի տեղասցեն 'ի սմա , այժմ ողորմութեամբ և գթութեամբ երեւեցոյց մեզ 'ի յորդառատ Ջրոյն կենդանի զակամնակիս վտակն քաղցրահամ , զհայրապետան

զսուրբն Ներսէս, զջուարթարար ցօղն բարեպաշտութեան բուսոյն, և զանպատմելի ցնծութիւնն եկեղեցւոյ սրբոյ: Սա այսօր Հայաստանեայց եկեղեցւոյ եհաս յօգնութիւն:

Սուրբն Ներսէս, խոպանացեալ այգւոյն պարմանիչ, զօսացեալ տնկոցն տածօղ, թառամեալ ծաղկանց արբուցանօղ ցօղոյ: Սուրբն Ներսէս, գերեալ և նեղեալ ազգիս գերեդարձ. մոլորեալ հօտիս խընդրօղ. ծովածուփ նաւիս ղեկավար: Սուրբն Ներսէս, նսեմացեալ զարմիս լուսատու. հիւանդացեալ անդամոցս բժիշկ. անայցելու ցեղիս խնամածու: Սուրբն Ներսէս հոգեւոր շինուածոյս խարիսխ. թիւրաշարժ կառուցս ուղղիչ կառավար. անպահապան քաղաքի եկեղեցւոյ զգուշացուցիչ դէտ: Սուրբն Ներսէս հովուաց տգիտաց խրատիչ. անխրատ աշակերտաց վարդապետ քաղցրուսոյց, ցրուեալ և վարատեալ անդամոց գովելի գլուխ: Սուրբն Ներսէս քահանայական

գաւազանին յարադալար ծաղիկ· արքայական ճոխութեան զգօնացուցիչ բանիւ· սանձ իշխանական, զըրուն մարտակից եւ զօրավիգն։ Սուրբըն Ներսէս ամենազօր նախնեացն սրբոց գովելի զաւակն· լուսաւորիչ հարցն հօգեկից շնորհազարդ որդին· յանձրեւածին ամպոյն հայրենի՝ արբուցանօղ ցօղն քաղցրութեան։ Սուրբն Ներսէս արեգակնանման մեր Լուսաւորչին ճառագայթաւէտ նշոյլքն լուսոյ· առաքինասէր հովուին հսկօղն սեփհական ժառանգին· հայրենի բազմատեան անկոյն ծաղկաւէտ ձիւն օրհնութեան եւ քաղցրաբաժակ։ Սուրբըն Ներսէս Յուսկանն սրբոյ յաբաժամ յուսոյն եւ յորդառատ պաղատանացն պտուղ, աղօթանուէր հայցմանն եւ խնդրուածոցն պարգեւ, հրեշտակասէս երեւմանն աւետաւոր խոստումն։ Սուրբըն Ներսէս ըստ մարմնոյ ազնուականութեան 'ի քաջատոհմիկ ազգէն պալհաւունի, ըստ հոգւոյն բարեզարդութեան՝ գերաշխարհիկ եւ երկնա-

նման, ըստ հասակին բարեձեւութեան շնորհաշուք եւ զարմանալի. զորոյ այսօր անպատմելի ցնծութեամբ պատմեմ ձեզ զգիւտ գանձին ծածկելոյ յագարակի. եւ դուք վաճառելով զինչս անցաւորիս գնեցէք եւ զայս փարթամութիւն գանձու արտասուալի պաղատանօք:

Բայց քննելի է եւ արտասուագոչ ձայնիւ պատմել զայս, թէ վասն էր անյայտացեալ էր գերեզման սրբոյն Ներսեսի զայսքան ժամանակս ամաց. զի յայտնապէս ուսանիմք 'ի պատմութենէն, թէ ինքն թագաւորին եւ իշխանքն տարեալ թաղեցին 'ի Թիլն աւան 'ի մեծ եկեղեցւոջն, եւ կացեալ սիւն լուսոյ 'ի վերայ գերեզմանին զաւուրս քառասուն. եւ բազումք գտանէին ըզբժշկութիւն 'ի շնորհս գերեզմանի նորա: Եւ յայսմ պատճառի իմանամք 'ի պատմութենէ. քանզի Հերակլ արքայն Յունաց յետ ութսուն ամի թուականին Հայոց ելանէ 'ի պատերազմ ընդ Խոսրով արքային Պարսից եւ սպանանէ զնա.

և յետ ութ ամի այսմ լինելոյ՝
Աբդռահիմ քեռորդին Մահմետի՝
ելանէ ութեւտասան հազարաւ 'ի
Հայս, խնդրել հարկս և կոտորել
զզօրս քրիստոնէիցն որ 'ի Տարաւն
գաւառի. և անցանէր 'ի Հարքս և 'ի
Բասեն, 'ի Վիրս և 'ի Ջաւախս և
'ի Վանանդ. և առեալ հարկս դառ-
նայ 'ի Տաճկաստան: Ի սոյն ամի
քակին երեք մեծամեծ եկեղեցիքն,
որ հիմնարկեալ էին 'ի սրբոյն Գրի-
գորէ. եկեղեցին որ Յաշտից վանսն,
և որ յանուն սուրբ Կարապետին
որ յԻննակնեանն, և կաթողիկէն
որ 'ի Թիլն. և 'ի փոփոխմանէ շի-
նուածոյ եկեղեցւոյն այլ և 'ի սրով
սպառելոյ ծանօթից սպասաւորացն՝
'ի բառնալ հինահարութեանց այլ-
ազգեացն, անյայտացաւ գերեզման
սրբոյն. որ և այժմ շնորհօքն Աս-
տուծոյ յայտնեցաւ 'ի ժամանակս
վերջին. յորում էին 'ի ծննդե-
նէն Քրիստոսի ամք հազար երկե-
րիւր եւթանասուն և հինգ. և 'ի
սրբոյն Գրիգորէ ինն հարեւր վաթ-
սուն և ութ ամ. և 'ի մահուա-

նէ սրբոյն Ներսեսի՝ ութ հարեւր եւթանասուն և երկու ամ. և Թուականին Հայոց որ յաւուրս Մովսեսի Հայոց կաթողիկոսի եղաւ 'ի պատճառս պատճենի մերոյ տումարիս եւթնհարեւր քսան և մի, 'ի հայրապետութեանն Հայոց տեառն Յակովբայ հոգեշնորհ վարդապետի. 'ի թագաւորութեանն Հայոց Լեւոնի որդւոյ Հեթմոյ և թոռին քաջին Լեւոնի, որդւոյ Ստեփանեայ, որդւոյ Լեւոնի, որդւոյ Ռուբէնի մեծի իշխանին, որ էր 'ի զօրացն Բագրատունեաց, և յազգէ նորին և 'ի տանէ և 'ի տոհմէ Արծրունեաց. որ և մեր պսակաւորն Լեւոն զերկուցն ունի թագաժառանգ ազգաց զազգականութիւն. 'ի յարքեպիսկոպոսութեան մայրաքաղաքին Եզնկայ և գաւառիս Եկեղեաց տեառն Սարգսի. յորում տունկ քաղազուարճ երեւեալ 'ի վիճակիս յայս, որ է տեղի չարչարանաց և նահատակութեան լուսաւորչին մերոյ սրբոյն Գրիգորի. պատուեալ յԱստուծոյ մեծարեալ յազգաց և

յաղանց և 'ի Թագաւորաց մեծաց, բարենշան շառաւիղ մերում ժամանակիս և սկիզբն նորոգման եկեղեցւոյ պայծառութե . որ և շինեաց զհրաշազեղ խորանն Աստուծոյ զեկեղեցկայարմարն եկեղեցի . որ յանուն փրկչին մերոյ և տեառն Յիսուսի , բարեսէր և աստուածապարգեւ ղաւազան Յովհաննիսիւ . վասն որոյ և այս նշան ակնկալութեան յուսոյ փրկութե հայաստանեայց յաւուրս սորա երեւեցաւ . զոր և պատմեմ ձեզ հաւաստացեալ հօտիդ Քրիստոսի զկայանութիւն նշխարաց սուրբ և երջանիկ հայրապետին Հայոց տեառն Ներսիսի , որ է որդի որդւոյ Յուսկանն , որդւոյ Արթանիսի , որդւոյ մեծին Գրիգորի Հայոց Լուսաւորչին ։

Եւ է օրինակ երեւմանն այսպէս . 'ի Թիլն աւան՝ յեկեղեցւոջն որ յանուն սուրբ հայրապետացն , էր անդ սարկաւագ մի 'ի գործ սպասաւորութեան վանիցն , հեզ և հանդարտ վարուք Պատուական կոչեցեալ անուն , թէ ըստ պատահ-

մանն և Թէ ըստ յուսոյ 'ի ծնողացն ե-
դեալ, այլ ճշմարտապէս ըստ յու-
սոյ 'ի վերայ նորա կատարեցաւ. զի
զայս մեծագոյն պատիւ 'ի տեառնէ
ընկալաւ, նմա յայտնել զնշխարս
փառաւորեալ սրբոյն Ներսեսի ։
Զոր և պատմեաց այսպէս զտեսիլն
առաջին զոր ետես յամսեանն յու-
նուարի 'ի քսան և վեց, 'ի հինգշա-
բաթւոջ գիշեր. Տեսանէի ասէ
այր մի ծերունի հանդերձ ծիրանի
զգեցեալ, 'ի կերպարանս քահա-
նայական ձեւոյ, նստեալ 'ի ջորւոջ
փառաւորապէս, և մտանէր 'ի
դուռն վանիցն, և ասէ ցիս. Եղ-
բայր, ո՞ւր է հանգուցեալ եկեղեցին
որ աստ կայ. և կալեալ իմ զսանձ
ջորւոյն իջուցի զնա և առաջնոր-
դեցի մինչեւ 'ի հանգուցեալ եկե-
ղեցին. և եկեալ ասէ. Աստ է
գերեզման սրբոյն Ներսեսի. և գա-
ւազանաւն զոր 'ի ձեռինն ունէր՝
նշանակէր զտեղին 'ի կողմն գլխոյն.
և 'ի հարկանել գաւազանին՝ լոյս
հրախառն փայլատակէր 'ի տեղւոյն.
և ասէ. Տեղին զոր ցուցի՝ ստուգա-

աղես է գերեզմանն սրբոյն Ներսեսի , յորում կան նշխարք սուրբ ոսկե-րաց նորա . սպասաւոր առաջնորդի տեղւոյդ և եկեալ հանդէք . և չէ խորագոյն , այլ սակաւ հողով ծած-կեալ : Եւ այս չորս անգամ սաս-ցին ինձ գալ և ցուցանել զանեղիս , և ես պատճառէի զծերութիւն . և ետուն զջորիս դայս զի բարձցէ ըզ-ծերութիւնս իմ , և ես եկեալ ցու-ցի : Եւ իբրեւ զարթեայ 'ի քնոյ 'ի զարմացման եղեալ կայի ահիւ պա-կուցեալ , և պատմեցի զտեսիլն եղ-բարցն որ 'ի վանսն , և ասեն աղօ-թեա զի երկրորդեսցի տեսիլդ : Եւ 'ի միում գիշերի յորում ուրբաթ լուսանայր , տեսանէի երիտասարդ մի 'ի ձեւ զինուորի , և հանդերձն 'ի գոյն ծիրանւոյ . այն ինչ բոլո-րեալ զծնօտիւն թխագոյն մօրուացն շուրջանակի . և ասէ ցիս . Հանեք զնշխար սրբոյն Ներսեսի , և ասեմ Ոչ , վասն զի չհաւատան ինձ . և նորա իբրեւ կնիք մատանւոյ ունե-լով 'ի ձեռինն դրոշմէր 'ի վերայ տեղւոյն և ասէ . Այս է գերեզ-

մանին յորում կան նշխարք սրբոյն
Ներսիսի, փութայես հանջիք զնա.
և իմ զարթուցեալ պատմեցի զտե-
սիլն ։ Եւ ասեն եղբարքն. Աղօ-
թեա, զի երրորդ անգամ երեւես-
ցի քեզ տեսիլն, զի անհնարին է այդ
թէ կարասցուք գտանել զգերեզ-
ման սրբոյն ։ Եւ ապա 'ի միւս գի-
շերի երեւեցաւ ինձ նոյն երիտա-
սարդ և ասէ իբրեւ սաստիւ. Ըն-
դէ՞ր յապաղէք և ոչ հանէք զնշխարս
սրբոյն Ներսիսի ։ Եւ ես զարթու-
ցեալ պատմեցի և զնոյն տեսիլ. և
ասեն ցիս. Մի անգամ այլ երեւես-
ցի քեզ և ճշմարիտ է բանդ ։ Ապա
'ի միւս գիշերի յորում միաշաբաթ
լուսանայր, երեւեցաւ նոյն երիտա-
սարդ և ասէ. Ընդէ՞ր ոչ փութայք
հանել զփառաւորեալ նշխարս սըր-
բոյն Ներսիսի. զի ահա այս երեք
անգամ եկեալ ցուցի քեզ և հա-
սեալ է ժամանակ յայտնելոյ սըր-
բոյն, որ մինչեւ ցայսօր եկաց
անյայտ և կոխան ոտից, վասն ազ-
գին իւրոյ կոխան լինելոյ 'ի բազում
ազգաց. այլ այժմ փութասջիք հա-

նել. զի զճնճղուկ՝ որքան 'ի ձեռին ունիս զգուշաւորիր պահել. ապա թէ զերծեալ թռիցէ՝ դժուարին է ըմբռնել. որ է այս ինչ տեսութիւն բանին, թէ անձն սուրբ՝ որ իբ-րեւ զճնճղուկ ապրեալ եղեւ յո-րոգայթից որսողին, հրեշտակա-կրօն վարուք 'ի մարմնի ազատ մնա-ցեալ 'ի հոգեկան և 'ի մարմնական ախտից, և զայսքան ժամանակս անյայտ լեալ 'ի մարդկանէ, այժմ որ իւր իսկ է կամք յայտնել՝ հոգ-տարջիք գտանել. ապա թէ ան-փոյթ առնէք՝ դարձեալ ծածկէ զինքն, և յայնժամ ոչ ինչ կարաս-ջիք առնել: Եւ իմ յարուցեալ պատմեցի զվերջինս զայս տեսիլ, և հաւատարիմ եղեւ ամենեցուն, և ետուն փառս Աստուծոյ 'ի վերայ գթութեան շնորհաց նորա և ողոր-մութեան: Ապա վաղվաղակի վար-դապետն Ներսէս առաջնորդ տեղ-ւոյն 'ի քաղաքին հասանէր առ մե-ծապատիւ արքեպիսկոպոսն տէր Սարգիս, և պատմէր նմա զհանգա-մանս տեսլեանն և աւետիս տայր

բարեաց և փրկութեան լինել նշան զերեւումն սրբոյն Ներսեսի , որ յաւուրս նորա առաջնորդութեանն յայտնեցաւ . և նա գոհանայր զԱստուծոյ լցեալ մեծաւ խնդութեամբ : Եւ ապա ասէ . Գնասջիք դպիրներս զայս եղբայրական դասիւն, հսկումն արասջիք , և 'ի վաղիւն բերցէք զտեղին մինչեւ երեւեսցի գերեզմանն . և ինձ ազդ արարէք , զի եկեալ հանցուք զուրախարար պանձն Հայաստանեայց . և նոքա գնացեալ այնպէս արարին : Եւ 'ի վաղիւն որ էր մուտ փետրուարի ամսոյ , աստուածապատիւ արքեպիսկոպոսն տէր Սարգիս և բարեսէր իշխանն պարոն Յովհաննէս որդի նորա , առին ընդ ինքեանս զպաշտօնեայս եկեղեցւոյն և 'ի պատուաւոր արանց քաղաքին և այլ բազմամբոխ ժողովուրդ քաղաքին ելին զհետ նոցա իբրեւ զեղջերուս ծարաւի 'ի ջուր փափագեալ . զի վկայէր 'ի միտս ամենեցուն մեծի և փոքու թէ եհաս ժամանակ փրկութեան և ազա_

տութեան Հայաստանեայց ։ Եւ իբրեւ եկին 'ի տեղին, անկեալ երկրպագեցին գերեզմանին հրեշտականման մարմնոյն օթարանի, և յարկին սրբոյ ծածկողի զգանձն լուսոյ ։ Իսկ զնշխարս սրբոյն հանեալ էին յառաջագոյն բնակիչք վանիցն՝ երկուցեալ 'ի բազմութենէ ամբոխին զուցէ ոչ կարիցեն հանել պատրաստութեամբ ։ Եւ էր կազմեալ գերեզմանն ըստ երկայնութեանն չափ երից կանգնոյ, և լայնութեամբ իբր կանգուն մի՝ 'ի կողմ ներքին, և խորութեամբ չորս աստիճանօք մարդաչափ մի. կազմեալ կրամած քարիւ. և յարեւմտից կողմ գերեզմանին էին նշխարք սրբոյն Ներսէսի թաղեալ յաթոռ, և այնպէս եդեալ 'ի գերեզմանն՝ հանդէպ արեւելից, որ և նոյնպէս կային ամենայն յօրինուածք մաքուր ոսկերացն յիւրում տեղւոջն, և գլխոյն դէր 'ի վերոյ ամենայն անդամոցն որպէս կենդանւոյ. և էին առաջի նորա 'ի մէջ գերեզմանին այլ նշխարք, ոչ բովանդակ

մարմին՝ այլ մատն ինչ եդեալ 'ի մեծամեծ անդամոցն և տակաւ ինչ հողով ծածկեալ էին սուրբ նշխարքն. և առա 'ի վերոյ երեքկըրկին կամարք կապեալ 'ի կրոյ և 'ի քարանց 'ի վերայ գերեզմանին: Եւ հրամայեալ եպիսկոպոսն սպասաւորաց եկեղեցւոյն բերել զնշխարս սրբոյն մերձ 'ի գերեզմանն, զի անդ տեսցէ ինքն և բազմութիւն ժողովրդեանն: Եւ իբրեւ ետես զաստուածային հոգւով կենդանի նշխարս ոսկերաց սրբոյ հայրապետին մերոյ Ներսիսի և երկրորդ լուսաւորչին Հայոց, յարտասուս եղեալ սկսաւ լալ և ողբական ձայնիւ իբրեւ ընդ կենդանւոյ խօսելով գութ արկանէր սրբոյն և ասէ. Ահա ժամանակ գթալոյ, սուրբդ Աստուծոյ, եթէ ողորմեսցիս քո անկեալ և տառապեալ ազգիս. 'ի բազում ալեաց ծփեալ և հողմակոծեալ կայ նաւ եկեղեցւոյ. Ձեռնտու լեր և օգնեա բազմահմուտ և ամենիմաստ նաւավար. մոլորեալ է հօտ Քրիստոսի, և կարօտեալ 'ի կենաց կերա-

կրոյն , պահամփժեալ և ցրուեալ , մատնեալ 'ի ձեռս գայլոց յանխնայ մկրտուորողաց . այս է ժամանակ այցելութեան և Թափելոյ զպատուհաս քո 'ի գայլոց ։ Հիւանդացեալ է մարմին եկեղեցւոյ , և ոչ գտանէ հարազատ բժիշկ իւրոյ բեկմանն և դեղ մահաբեր ցաւուն . ոչ է մասն եթէ պատմեցի . և ոչ 'ի միում անդուոյ՝ թէ սպեղանի դնիցի , այլ բոլորովին է ախտացեալ ։ Հայկաց բժիշկք ցաւակցաբար և հայցեա 'ի մարգարէք բժշկէն բնութեանս ստեղծողէ , զի խոնարհեցուցէ զունկն լսել տառապանաց ձայնի հեծութեան նեղելոցս ։

Զայս և որ սոցին նման է մաղթեր առաջի սուրբ նշխարացն , և ապա հրաման տայր բազմութեան ամբո-խին , քահանայից և ժողովրդոց՝ միջ-նորդութեամբ սպասաւորի ռամկին բանի զնախնեացն խոստովանել զյանցանս և զանհնազանդութեան նոցա խնդրել զթողութիւն , յա-ղագս որոյ այսր ամենայն չարիք ե-կին 'ի վերայ մեր . և դնել ուխտ

առաջի կենդանի նշխարացն , ոչ գտանել ընդ նոյն ճանապարհ չարեաց և ոչ ապստամբ լինել աստուածային պատուիրանացն և օրէնսդրացն խրատու ։ Վասն որոյ ասեն . Մեղաք քեզ հայր սուրբ և հոգւոց մերոց վերակացու , պատկեր Հօրն երկնաւորի և կերպարան գթութեանց նորա . մեղաք մեք և հարքն մեր , անօրինեցաք և յանցեաք ։ Եթէ ճաշակեալ էաք ըզպտուղ քաղցր պատուիրանացն քոց՝ ոչ էաք կարօտ մնացեալ՚ի լուսաւորիչ հարցն տեսչութենէ ։ Արդ մեք մեղաք հայր սուրբ , և դու բարկացար . դու բարկացար և մեք տառապեցաք . մեք նեղեցաք և դու գթացիր ։ Արդարութեամբ և յիրաւի տիրեցին մեզ ամենայն չարիք , զի կամակար միտք յուղիղ ճանապարհէն թիւրեցաք ։ Ցիրաւի ծածկեաց զմեզ տրտմութեանն խաւար , զի ՚ի լոյս պատուիրանացն ոչ հետեւեցաք ։ Արդարապէս աղքատացաք , զի զցանկալին քան զոսկի և քան զամենայն ականս պատուա

կանս զօրէնան աստուածային յօգիս մեր ոչ գանձեցաք. վասն այնորիկ տիրեցին մեզ ցաւք մահաբերք, զի հոգեխացուցիչ և կենդանի բանիւն Աստուծոյ ոչ կերակրեցաք: Տիրեաց մեզ քաղց կսկծելի և ծարաւ պապակման, զի Աստուծոյ բանիցն կերակուր 'ի քաղցր հարանցդ ոչ ըմպեցաք:

Նմանեցաք մեք հնոյ ժողովրդեանն գերեալք 'ի Բաբելոնէ, որք և առ գետովքն նստեալ լային զՍիոն յիշելով թէ յո՞ր վայելուչ վայրէ յո՞ր անկան տառապանս. և մեք գերեալք 'ի մէջ անհնայն ազգաց, լամք զբարձր փառաց մերոց նուաստանալն զրկեալք 'ի յաղթող թագաւորացն, և ծառայք լեալ այլազգաց օտարաց. յանպտուղ ուռին կախեալ կան կտակարանք մեր՝ զի քաղցր պտուղ լուսաւորիչ զարմին սրբոյն Գրիգորի՝ պակասեաց 'ի մէնջ: Մոռացաք մեք զխրատս խաղաղութեան հօրդ հոգեւորի, մոռացար և զմեզ աջդ մեր յաջողակ: Ա՛ջդ որ պարիսպ հրեղէն էր զօրացն

Հայոց . աջդ՝ որ բարձրացուցա-
ներ զդրօշ Թագաւորացն Հայաս-
տանեայց . աջդ՝ որ զօրացուցաներ
զբազուկ սպարապետացն Հայոց
յասպարիսի . աջդ՝ որ մովսիսաբար
տարածմամբ պարտէր զկողմն Թըշ-
նամեացն . աջդ շնորհաբաշխ և
պարգեւաշատ . աջդ սնուցանող և
դաստիարակ կաթնասուն մանկանց
Սիօնի :

Արդ հայր , հաշտեաց հայրենի
գթոյդ միջնորդութեամբ , թող ըղ-
պարտիս յանցաւոր որդեացս : Հար-
կանէ հայր զորդի , ցաւեցուցանէ ,
և ինքն ոչ մնայ առանց ցաւոց , այլ
քան զհարատեալն դաւաղանաւ զան-
հնազանդ որդի՝ առաւել եւս զգայ
ցաւոյն վասն ծնողական գթոյն : Եւ
զի եկեալ կատարեցան 'ի վերայ մեր
անէծքն 'ի քէն մարգարէական
հոգւով , և կրեցաք ողբերմունս
դառնութեան ժամանակաց 'ի պա-
տուհաս պատուիրանազանցութե՟
մերոյ , և ըստ մարգարէական բանին
Աղաղակեցաք և ոչ ոք էր որ փրկէր ,
կարդացաք առ տէր և ոչ լուաւ

մեզ 'ի նեղութեան մերում. ոչ
գտաւ մեզ անդորրութիւն և ոչ
թիկունք օգնականութեան, ոչ
պատսպարանութիւն և ոչ ձեռնտուու-
թիւն, ոչ պաշտպանութիւն և ոչ
ակնկալութիւն յուսոյ. ոչ փրկու-
թիւն յումեքէ և ոչ սփոփանս մխի-
թարութեան. այլ ամենայն դուռն
փակեալ քրիստոնէից, ուրախու-
թիւն և ցնծութիւն բարձեալ 'ի մի-
ջոյ, նեղութիւն և հեծութիւն և
տագնապ յամենայն տեղիս տարա-
ծեալ: Եւ վասն զի որք մնացաք,
և ոչ գոյր մեզ հայր որ պաղատէր
առ հայրն գթած՝ և հաշտեցուցա-
նէր առ որդիքս տարագրեալ և մեր-
ժեալ, և ոչ միջնորդ որ տարած-
մամբ բազկի և մատամբք մաքրեցե-
լովք հայցէր նման Մովսէսի. այլ
այժմ, հայր, հայցեա զԵրեմիային
մաղթանս որ վասն հնոյ ժողովըր-
դեանն, մատո զմերս ձայն հառա-
չանաց առ բարձրեալն, որ ոչ եր-
բեք մոռանայ. պատմեա 'ի դիմաց
մերոց և ասա. Ցիշեա տէր, որ ինչ
անցք անցին ընդ մեզ, նայեա և տես

զնախատինս մեր . ժառանգութիւն մեր դարձաւ յօտարութիւն և բնակութիւն մեր 'ի նժդեհութիւն . ըզջուր մեր գնոյ արբաք և զփայտ մեր առանց փոխանակի . եկն 'ի վերայ պարանոցի մեր նեղութիւն . հալածական եղաք և ոչ գոյ մեզ հանգիստ . ձեռնաձիգ եղեն 'ի մեզ որդիք օտարաց : Հարքն մեր մեղան և ոչ են ուրեք 'ի միջի , և մեղք հարցն մերոց ընդ մեզ ելին : Ծառայք տիրեցին մեզ . և այն որ փրկէր զմեզ 'ի ձեռաց նոցա՝ չէք ուրեք 'ի միջի :

Եւ արդ հայր , եթէ զայս աղէտ տարակուսանաց յիշեցուսցես Հօրն գթածի և մարդասիրի , որ ոչ երբէք մոռանայ , գիտեմք զի դարձցի 'ի բարկութենէ սրտմտութեանն՝ որ ոչ է իւր բնական , և շարժի 'ի գութ քաղցրութեան և ողորմութեան՝ որ իւր է սեփհական : Վասն որոյ հայր մաղթեա ընդ մեղուցելոցս , պաղատեա ընդ պարտաւորելոցս , հայցեա ընդ հիքացեալ թըշուառականացս : Գիտէ հայրն հասարակաց լսել մաղթանաց հօր որ

վասն որդւոյ անատակ կենօք վարեցելոյ . պատուէ զայնս պատուական որ վասն պարտաւոր որդւոց երաշխաւորէ , հայր 'ի հայցուածս հայրենի գԹով Թախանձել ։ Եւ այսպէս որ յառաջագոյն անսուԹեանց ցուցաւ արկածք պատուհասի բարկուԹեան տեառն և բեկման մերոյ զօրուԹեանն՝ ցուցցէ և այժմ յողորմուԹեան ժամու՝ հաշտուԹիւն տեառն բարի կամաց և ձեռնտուուԹիւն աջոյն հզօրի յարուցանել զանկեալ ազգս և միխԹարել զբազմամեայ տխրեալքս հոգւով ։

Արդ զայս և որ ինչ նման է սոցին բանք պաղատանաց՝ մարգարէական հոգւով խօսեցեալք , յիշատակեցան 'ի տեղւոջն . և ուխտադրուԹիւնք արտօսրագոչ հառաչանօք յամենայն ժողովրդենէն եղեն առաջի կենդանի նշխարացն ։ Յայնժամ առեալ եպիսկոպոսին զսուրբ նշխարսն և մտանէր յեկեղեցւոջն , եդեալ 'ի սպիտակ 'ի և սուրբ կտաւս , և առանձին գնէր յերկուս արկեղս և կնքէր իւրով մատանեաւ . և երկու

մասն մեծ տայր 'ի սպասաւորս եկե-
ղեցւոյն 'ի համբոյր և 'ի տես ուխ-
տականաց ժողովրդեանն՝ որ գային
յամենայն կողմանց. և այլն կայր
յեկեղեցին, կնքեալ մատանեաւ և
պահեալ զգուշութեամբ. և ինքն
եպիսկոպոսն գնայր 'ի քաղաքն, և
որ ընդ նմա բազմութիւն քաղա-
քին, մեծաւլովտեսչութեանն Աստու-
ծոյ թէ զինչ արասցէ ։ Եւ վասն զի
հնչեաց համբաւն յաշխարհ, և
զուարճացան որ յամենայն տեղիս
ազգ Հայաստանեայց, և դիմեալ
գային բազմութիւնք հաւատացելոց
յերկրպագութիւն և 'ի տեսութիւն
սուրբ գերեզմանին. յայնմանէ
ընդոստուցեալ և զարմացեալ ազգն
Տաճկաց, և եմուտ խորհուրդ 'ի
նոսա եթէ յինչ կամի աւարտել
վախճան բանին. քանզի է գրեալ
առ նոսա իւրեանց գրովն հրաշալի
տեսիլ սրբոյն Ներսիսի՝ 10 որ վասն
հանդերձելոյ ժամանակացն որ ինչ
եղեալ է և որ լինելոցն. և տագնա-
պէին խորհրդով զսկիզբն իրին
վախճան իւրեանց իշխանութեանն

համարելով . և բազումք 'ի նոցանէ 'ի նախանձ մասաբերեալ՝ խորհեցան ժողով լինել 'ի բնակչաց քաղաքին , գնալ գիշերի 'ի վանսն , յափշտակել զնշխարս սրբոյն . թերևս կարասցեն ծածկել զհամբաւն աշխարհալուր : Այդ եղեալ այս եպիսկոպոսին և գնաց քահանայական դասուք և պաշտաւոր արամբք , և առեալ զոսկորս նշխարսն բերեր 'ի քաղաքն մեծապէս փառօք , և բերկրալից ցնծութեամբ . որում ընդ առաջ ելեալ բազմութեան քաղաքին՝ լցեալք անպատում խնդութեամբ , տարեալ եդին 'ի մեծահրաշ և 'ի գեղեցկաշէն եկեղեցին : Իսկ պատուեալն 'ի տեառնէ արքեպիսկոպոսն տէր Սարգիս զաջն և զմեւս բազուկն տայր յօրինել իմաստուն ոսկեգործաց , և զմանր մասունս մասանցն առ միմեանս միաբանեալ յարծաթոյ և յոսկւոյ պատեալ մանրամասն յօրինուածով՝ տեղի երեւման 'ի ցոյցս տեսլեան արարեալ պահպանիչ աջոյն և բազկին շնորհաբաշխ : Նոյն-

պէս և տայր յօրինել գլուխ արծաթեղէն յարմար մեծահասակ անձինն, պահարան գլխոյն նշխարաց, և 'ի բաց առնելով զցիրս երեսացն և զբերանոյն և յերկս տեղիս հանդէպ ճակատուն խաչաձեւ հատուածս արարեալ յարծաթոյն, յորում երեւէին նշխարքն փառաւոր. և զայլ բովանդակ նշխարս սուրբ ոսկերացն՝ լուանայր զհողն մածեալ անապակ և անուշահամ գինով յանուշահոտ ծաղկանց խառնելոց, և օծեալ խնկահոտ իւղով կազմեալ արուեստաւորապէս: Եւ պահէին զգուշութեամբ մինչեւ շինեսցի եկեղեցին 'ի վերայ գերեզմանին, զի անդ եդեալ 'ի տեղւոջն գերեզման յօրինեսցեն գեղեցկազարդ կազմեալ և մեծածախ զարդիւք, և զանկողոպտելի գանձն զոր շնորհեաց Աստուած գաւառին Եկեղեաց՝ անդէն ծածկեալ ունելով գերեզմանին: Իսկ զաջն առաքելաշնորհ եդեալ արքեպիսկոպոսն տէր Սարգիս յիւրաշէն եկեղեցին որ 'ի քաղաքն՝ 'ի Նորոգապէս չի-

նեալն հրաշատես և զարմանալի փառօք և մեծածախ զարդուք երից Թուով խորանաց, յանուն փրկչին մեր Յիսուսի վասն խորանին, և միւսն կաթողիկէ և միւն յանուն սրբոց առաքելոցն. և եդեալ անդ զաջն սրբոյն Ներսեսի 'ի զարդ և 'ի պահպանութիւն սրբոյ տաճարին, մնալ մշտնջենաւոր կայիւք: Եւ ըղմեա բաղում ձեռնին կազմեալ մատամբքն մաքուր աւրեալ 'ի հաշտականուն և 'ի գեղեցկաշէն սուրբ ուխտն Տիրաշինին՝ անդէն մնալ յեկեղեցւոյն փառաւորապէս, զոր և յառաջին խոկ շինեալ էր: Որ և ընդ մէջ լինելով եգեմաբուխ գետոյն Եփրատայ բարեզարդ և վայելուչ վիճակին և ամենազով գաւառին Եկեղեաց, զոր խմաստաբար և մեծ յուսով արարեալ խոհեմականն տէր Սարգիս, զի զերկնաւորն բաղուկան և զձեռն առատաձիր շնորհիւ լցեալ սրբոյն Ներսեսի, զերկրորդ մեր լուսաւորչին, առհմանէր յերկուս կողմանս գետոյն, որպէս Թէ տարածեալ ունելով զԹեւսն

հովանի գաւառին և զբազուկսն ա-
ղաչօղ բարեխօս առ բարձրեալն , և
զձեռնն յառնուլ աննուաղ բա-
րեաց և բաշխեալ եկեղեցւոյ ման-
կանց 'ի փարթամութիւն փառաց
հայրենի գանձիւք • և տայր հաւա-
քել նիւթ շինուածոյ եկեղեցւոյն
պատրաստութիւն քարանց ։

Բայց զի աշխարհս հայաստա-
նեայց արեամբք և քրտամբք հո-
գեւոր մշակացն Բարթուղոմէոսի
և Թադէոսի առոգեալ պարարտա-
ցաւ , և երկնեալ ահիւն Աստուծոյ
և պտղաբերեալ ծնաւ զմարդն երկ-
նաւոր՝ զարժանաժառանգ զաւակն
սրբոց առաքելոյն , զվայելուչ սըր-
սակն պարթեւեան ազգին , զԳրի-
գորիոս գերազանց գտեալն յամե-
նայն ծնունդս որդւոց Ադամայ ,
որոյ համանմանեալ առաքելապա-
տիւ հօրն որդիքն առաքինազարդ՝
ժառանգեցին զաշխարհս զայս փո-
խանակ հարցն որդիքն փառաւոր ,
առաքելականն ընթացեալ շաւղօք
արեամբ և ձգամբք և քրտնաջան
մշակութեամբ զաշխարհս զայս Աս-

տուծոյ նուիրելով ։ Յորում մանա-
ւանդ քան զընդ աշխարհս՝ գա-
ւառս այս Եկեղեաց զճարտարա-
պետուն հիմնարկութեան և շինու-
թեան եկեղեցւոյ Հայաստանեայց
յինքն ընկալեալ կենօք 'ի բարիոք
կենաց պատճառ . և չարչարանօք
յանձնառուաց երախտեաց յիշատակ և
մահուամբ դեղ բժշկական միշտ
մահացելոց մարդկան ։ Յորոց և
զայժմուս գովելի տեսանեմք յետ
առաջնոյ և մեծին զերկրորդ մեր
լուսաւորիչս և հայրս առաքելա-
նման յայսմ գաւառի, 'ի վերայ պա՜
տուիրանացն Աստուծոյ սրբեալ
զբաժակ մահու, և սմին իսկ պար-
գեւ եղեալ գերեզմանին հողոյ, զի
հող երկրին զօրհնութեան պար-
գեւս ընկալցի, պարգեւական երկ-
րին նմանեալ, աշխարհ ժառանգու-
թեան տուեալ սիրելւոյն Աստուծոյ
Աբրահամու և զաւակի նորա, և առ-
ալընջական եղեալ մահուն . զի անդ
թաղեցաւ որդւովք իւրովք նահա-
պետն մեծ յայրն կրկնում յագա-
րակին Եփրոնի ։ Որդիքն Իսրայելի

յելսն յԵգիպտոսէ զոսկերսն Յովսեփու ընդ իւրեանս ունելով եդին 'ի Սիկիմ 'ի բաժնի ագարակին զոր ստացաւ Յակոբ. և մեք ունիմք զնշխարսն հոգւով կենդանի ոսկերաց սրբոյն Ներսեսի՝ որ կենաց հացին էր մեզ ցորենատու, և կայ այժմ 'ի բաժին ժառանգութեանն Թուրոյ, յորոյ վերայ եդ զանձն իւր հովիւն քաջ և հօտասէր:

Գովելի է գլուխ Հովր լերինն յորում վախճանեցաւ Ահարոնն և անդ թաղեցաւ, և զգեցաւ զքահանայութիւն Եղիազար որդի նորա. այլ գերազանց պատուոյ արժանացաւ գաւառս այս անձնագով, զի որ առաւել փառօք պայծառացեալն էր քան զօծումն շնորհի քահանայութեանն Ահարոնի, Քրիստոսի քահանայապետին երկնից զգեցող կարգի և 'ի Հոգւոյն աղաւնակերպ իջմամբ վկայեալ, աստ վախճանելով մեծին և արժանաւորէս ժառանգին՝ զհայրանմանն զգեցեալ քահանայական զգեստ, և զնոյն պարգևս քահանայական շնորհին պայծառա-

պէս զգեցեալ են եկեղեցիք Հայաստանեայց: Թաղեցաւ Մովսէս 'ի Գառնի մերձ 'ի տունն Փեգոմքայ, և ոչ ոք գիտաց զգերեզմանն նորա մինչեւ ցայսօր. և սորա յայտնապէս մարմնոյն Թաղեալ 'ի գերեզմանի և ոչ ոք գիտէր մինչեւ յօրս յայս, որ նշանաւոր եղեւ 'ի գլուխս ամաց. յորում յայտնեցաւ՝ նշխարքն սուրբ նորոգութիւն յուսոյ ակնկալութեան Հայաստանեայց: Յեսու զօրավարն Իսրայելի Թաղեցաւ առ սահմանօք ժառանգութեն իւրոյ 'ի Թամնասաքար 'ի լերինն Եփրեմի. իսկ մերս առաքինի զօրապետ զօրաց և զօրավարացն Հայաստանեայց հանդիսացուցիչն և աղօթիցն զինումարտակիցն 'ի պատերազմունս, յորում վերայ վիճակի հանդիսանայր 'ի կեանս, 'ի նոյն հանգեաւ 'ի գերեզմանի. և 'ի նմին յայտնեցաւ ծածկեալ գանձն յագարակի: Ունի Արեմաթեմ զՍամուէլ մեծն տեսանող, որ սուգ ունելով 'ի վերայ Սաւուղի ննջեաց. և ունի Եկեղեաց գաւառս զաւուրքն Ներսէս

զմարգարէահրաշ հոգւով տեսանողն ապագայից, որ սուգ մեծ ունելով 'ի վերայ Արշակունեացն ազգի ննջեաց խաղաղութեամբ. և այժմ զարթուցեալ մխիթարիչն զուարթարար տրտմութեամբ թախծեալ եկեղեցւոյ Հայաստանեաց: Դաւիթ պատուէր տայր որդւոյ իւրոյ Սողոմոնի զամենայն բարեաց և արդարութեան բանս, և ինքն ննջեաց ընդ հարս իւր և թաղեցաւ 'ի քաղաքի Դաւթի. և մերս հայր պարծանաց և թագաւորական զարմի շառաւեղ՝ պատուէր տայր որդւոց իւրոց զորս ծնաւ բանին վարդապետութեամբ, և ինքն ննջէր յիւր իսկ շինեալն և պայծառացեալ եկեղեցի, որ է քաղաք Աստուծոյ կենդանւոյ: Մաքրեալն աստուածային կայծակամբք մարգարէն Եսայի 'ի Մանասէէ սղոցեալ եդաւ մերձ 'ի Սելովամ, յորմէ ջուրն բժշկական ընկալեալ զօրութիւն. և 'Ներսէս սուրբ Հոգւոյն Աստուծոյ հրով մաքրեալն, 'ի նորին բարուց զուգակիր 'ի Թա-

զաւարէն՝ վասն յանդիմանութեան զբաժակ մահու արբեալ, եղաւ մարմինն հողանիւթ 'ի հող երկրի, յորմէ զօրացեալ բնութիւն հողոյն բժշկական ներգործութեամբ աղբեր առ յուսով և հաւատով դիմեալսն 'ի տեղի հանգըստարանին. վասն զի մարմինք հողւով մաքրեցելոցն և անդէն 'ի հող դարձելոց մահուամբ՝ բարեպաշտութեան երկնային և պատուի դերաշխարհիկ ընձեռեն երկրի, և վասն երկնաւէտ բարեաց աղբիւրացեալ ունին յինքեանս:

Բայց զի՞նչ է ինձ զաստուածամերձիցն որանց Աստուծոյ կենդանեաց և նշխարօք ոսկերաց զազգ և զգաւառ հռչակագործաց՝ առ միոյս այս ժողովել բանիւ, որ յայտնութեամբն եղեւ բերկրանաց պտուղ մերոյ աշխարհիս. այլ այսքան յիշատակեալք իբր հիւրամեծարք. սեղանոյ սուրբքն սրբոյս և երջանիկքն հոգւով երիցս երանեան հօրս և Հոգւոյն սրբոյ օթեվանի. հնոյն և նորոյ ժամանակի առաջնոյ

և վերջին սրբոցն դասու ազգակից առաքինութեան և քաղաքակից բարեաց և երանութեանն ։ Զի և այս աշխարհ հանգոյն համայնից բարեբաստիկ գովութեամբ հռչակելոց՝ համապատիւ է և յականաւոր առաքելոց վեհից վիճակեալ, և տեղի հանգստեան նոցա արժանացեալ, և առաքելանման հարց և լուսաւորիչ սրբոց կարգօք և կրօնիւք պայծառացեալ, և զսերմն բանի ուղղափառ վարդապետութեան նոցա 'ի համբարս հոգւոց զգուշութեամբ կնքեալ և պահեալ, և անպատկառ զնոյն ուղիղ հաւատոյ խոստովանութիւն մանկունք ծընեալք ընդ հօրն պատրաստ են հատուցանել ։

Եւ արդ մեք որդիքս Թշուառացեալ և բարեզարդ խրատու հօրդ կարօտեալ, նեղեալ 'ի յոքնատանջ կրից մեր մեղաց և յանխնամ խրատիչ նեղչաց, անկանիմք առաջի քո կենդանի նշխարաց, և յօր յիշատակի քո մեծահանդէս տօնի՝ 'ի յուշ արկանեմք զանթուելի բա-

րեալց քոց բաղդատութիւնս. ոչ ընդ միում ումեք 'ի սորբոցն զուգաբանեալ, այլ զհամագումար գովեստ ազնուականացն դասու յանձին տուացեալ: Քահանայապետ բարի միոյն և միայն Ճշմարտի պատարագի արժանապէս մատուցող կենարարին մարմնոյ և արեան, որ առաւել խօսի քան զՀաբելին. այլ և իբրև զարդարին առաջին անմեղդ նենգեալ՝ և զանձն Աստուծոյ պատարագեալ: Մեծի յուսոյն խարսխաւ հաստատեալ սիւնդ Հայաստանեայց, որովք Ենովան հանդիսանայր: Պատուողդ հիւրոց և օտարասէր, որովք Աբրահամ հայրն հաւատոց պայծառանայր. զի քո է բարեկարգութիւնս այս սահմանեալ յաշխարհս և յազգս Հայաստանեայց: Զաւակ խնդութեան յուսոյ բերկրանաց և խոստումն աւետեաց որպէս զԻսահակ. զի զուարթունն երկնաւոր կանխաւետեաց զբղխումն շնորհացն որ 'ի քէն մեզ աղբիւրաբար: Առաջնորդ բարեաց մեր Ճանապարհին,

որպէս Մովսէս իսրայէլեան բանակին. այլ և հրաշագործութեամբ ոչ նուազ քան զնորայն ժամանակի. նա յանապատին, իսկ դու յանբնակ կղզին. նա լորամարգի յօդոյ, իսկ դու չեղջս ձկանց 'ի ծովէ առանց գործիական արուեստի, և ջուր յապառաժուտ վայրէ քաղցրահամ, և հուր ինքնածին 'ի սէտս ժամու: Խնկարկու հաշտարար ըստ Ահարոնի, և այնքան վեհապատիւ՝ որքան զօրինակն ճշմարտութիւն. արեամբ կենարար գառինն երկնաւոր, և խնկով աղօթիցդ ծերունական, մաքուր սակեղէն սրտիդ բուրվառաւ, և հրով ջերմութեան Հոգւոյն Աստուծոյ՝ բերող ազատութիւն մեզ յանցաւորաց: Լցեալ մարգարէական հոգւով իբրեւ զԴաւիթ և զդասս մարգարէիցն սրբոց: Նախանձաւոր և վրէժխնդիր աստուածային օրինացն իբր Հեղիաս, որ և ընդ բանիւն խօսել արագապէս լինէր գործոյն և իրին կատարելութիւն: Կրկին հոգւոյ շնորհօք զարդարեալ որպէս Եղի-

անոս զվարդապետսն , և զու զնախ-
նոյն քո և սուրբքն մեր Լուսաւոր-
չին : Քարոզ Ճշմարիտ բարձրագոչ
ձայնիւ պատմելով Նորոյս Յակով-
բայ տան Հայաստանեայց զմեզս և
զանօրէնութիւն և խրատեալ յու-
սումն սուրբ աւետեաց աւետարա-
նին : Ակայ ընդ վկայիցն Ճշմարտու-
թեան 'ի վերայ պատուիրանացն
Աստուծոյ և վերակացութեամբն
յոր հաւատացար ուսուցանել զՃա-
նապարհս օրինացն՝ 'ի բարեաց ա-
ճեցող բարուց կենաց աւետարա-
նիչք մահացու դեղջք մնացանէիր :

Այլ կրեցեալքն ամենայն վտան-
գաւորք և չարչարականք աշխատա-
սիրի վաստակաւորիդ 'ի յերկինս
բազմապտուղք աճեցին . իսկ մեք
ըստ արժանեացն որ գործեցաք՝ ան-
բերելի ցաւովք տանջեցաք . նա և
արդէն իսկ չեւ եւս են լցեալ ըստ
յոլովութեան յանցանացն և ար-
կածք մեր պատուհասից . այլ նե-
ղիմք հիւանդարար ցաւովք և բժիշկ
բարեկամի ոչ հանդիպիմք : Անկեալ
կամք 'ի յանարգութիւն և կարե-

կրցաբար ձեռնտու յարուցանող ոչ
գտանեմք • վարակեալ եմք մեղաց
տռաւմք, և որ լուծանէ յայնմանէ
աղօթիցն հայցմամբ՝ չեք ուրեք 'ի մի_
ջի • Թանձրացեալ է անգիտութեն
մեզ խաւարի, և որ ցրուէ զայն լու_
սափայլ բանիւն վարդապետութե՝
ոչ դիւրաւ գտանի ։ Որբացեալ եմք
'ի բարեզարդ հօրէ, և չեք մեր հայր
որ գանձէ որդւոցս փարթամութի.
անկատար եմք 'ի սնունդ հոգեւոր,
և որ արկանէ 'ի վերայ զգութ գո_
րովողայոց 'ի Քրիստոս՝ ոչ ոք գտա_
նիցէ ։ Ցանկութեամբ մարմնոյ
ընդ երկիր քարշիմք սողաբար իբ_
րեւ զերկրածինս 'ի զեռնոց, և որ
զերկնաւոր բարեացն աւետիս մեզ
հաւատարիմ առնէ զանձն տալով
օրինակ՝ առ ոչ ոք վստահութիւն ։
Ցամենայն կողմանց յաճախեն մարտ
պատերազմի, և զօրապետ առա_
քինի յարդարող զՔրիստոսի զի_
նուորսն՝ ոչ գոյ յառաջադէմ մար_
տին ։ Նիրհեմք 'ի քուն Թանձրու_
Թեան զբաղեալ ունայնութեամբ
կենացս երկրաւոր, և հաւատարիմ

քարոզ քաղցր խթանաւ ձայնին զարթուցիչ ոչ գոչէ 'ի միջի մերում։ Գտանեմք տունկս կենդանի, և անպտուղ բարեացն լինիմք, և ոչ ոք անկարգործ իմաստուն խնամարկէ, զի պտղաբերեսցին՝ 'ի սպառնալեաց հրոյն թափեսցէ։ Որոմնացան սեր- մամբք խոտանանան բոյսք բարե- պաշտութեան ոգւոյս մեր անդաս- տանի, և որ պահէն յայնմանէ զուարթուն ականք անմխաւաւելի՝ ոչ է ումեք փութալի։ Գողացեալ լի- նին զանձքս մեծագին, ժողովուրդք Յիսուսի աբեամբն գնեալք, և զան- ձաւոր հաւատարիմ ոչ երբէք հան- դիպի։ Քաղցք և ծարաւի եմք կե- նացն բանի և լիապէս մեզ զայն ոչ ոք սեղանաւորէ. մերկք և ամօթալի եմք յառաքինութեան զգեստուց, և որ արկանէ զայն մեզ պատմուճան և երկնէ մինչ վերստին ծնցի և ըզ- գեցմամբն ամրացեալ զգուշացուս- ցէ, ոչ ոք ցուցանկցաբար արուես- տաւորէ։

Այլ դու, հայր, հայեացիս 'ի մեզ 'ի վերուստ ձեռնտուութեամբ հայ-

րական գթոյդ, զի կարող ես եթէ կամեսցիս, և այնքան առաւել որքան ազատ 'ի մարմնոյ կապակցութենէ, և այնչափ առաւել որչափ մերձ ես համարձակութեամբ յադբերոց բարեաց: Ընդ քեզ առեալ զդասս երկնայնոցն յորում դասեցար, զպարս սրբոցն յորում ամբարձար, զերամս արդարոցն յորս խառնեցար, և ամենեքումբք զամենեցունց տէրն աղաչեսցես, զի տացէ վերաւորելոցս ցաւովք ապաքինութիւն, գերելոցս դայթակղութեամբ՝ ձեռնտուութիւն յուսոյ. կապելոցս ընդ մեղօք ծառայութիւն՝ ազատութեան արձակումն. խաւարելոցս անգիտութեամբ լուսոյ ապաւինութիւն. որբացելոցս որդւոց մեղուցեալ՝ զհայրական գթոյն բարութիւն. 'ի պատերազմունս թշնամեաց՝ զամենազօր աջոյն օգնութիւն. ցրուեալ և մոլորեալ ոչխարացս՝ աստուածային և քաղցր ձայնիւ վերստին դարձեալ ժողովումն. 'ի ջուր հանդստեան և յարօտս կենաց անմատչելի գողոց և

գայլոց · զքո բարեզարդութեամբ կարգաւորեալս եկեղեցի , և զբանի վարդապետութեամբ լուսաւորեալ՝ քոյին հայցմամբ աղօթիցդ խնդրեա անսասան մնալ յաւիտեան : Աղաչեա զբազմագթութն գլուխ եկեղեցւոյ և զակն ամենատեսեա՝ որ ոչ երբէք ննջէ , զի ողորմութեամբ հայեսցի 'ի տառապեալս և 'ի կործանեալս եկեղեցւոյ , զոր ամբարշտութիւն չարեացն մեր և անհնազանդութիւն հրամանին հայրենի՝ խախտեցին զհիմունս , և ցրուեցին զժողովուրդ գնեալ պատուական արեամբ որդւոյն Աստուծոյ · քո տարածմամբ բազկացդ մաղթեա՝ զի ձեռն հզօր և ահեղն կարող , աշխարհի շինողն և խնամօք պահօղն՝ դարձեալ ժողովեսցէ 'ի ցրմանէն և անմիաբանելի ամրութեամբ պահեսցէ 'ի փորձանաց · և արժանի արասցէ ուղիղ հաւատոյն փառաւորութեամբ փառաւորել զամենասուրբ զԵրրորդութիւնն , այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից · ամէն :

այս կերպ քաջ իմաստասիրապէս, քանզի թէպէտ թագաւորութեանն այնորիկ յաջորդութիւն 'ի քսան և յաւելի ևս ամաց հետէ դադարեալ էր, այլ " Ի Նախարարսն Հայոց անկանէր թագաւորու֊ „ թիւնն „ որպէս ասէ Եղիշէ. և սքանչելի նահա֊տակութեամբ Մեծին Կարմիրն Վարդանայ յամին 451, վախճան եղև հարստութեանն Արշակունեաց։

10. Վասն տեսլեանն տես 'ի ծան. 4։ Իսկ զի յերեալ էր պատմութիւն տեսլեանն և յայլազգի լեզու, չունիմք այլուստ հաւաստիս. գուցէ յեկե֊ղեցական պատմութեան յարաբացի լեզու կարգեալ էր ուրուք զբանսն, կամ յայլ ինչ պէտս։

